Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 7 ՄԱՐՏ 1947

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Կ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 33—36:


# ՀՐԱՄԱՆ
## ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ԶԻՆՎԱԾ ՈՒԺԵՐԻ ՄԻՆԻՍՏՐԻ

23 փետրվարի 1947 թ. № 10 քաղ. Մոսկվա

*Ընկեր զինվորնե՛ր և նավաստինե՛ր, սերժանտնե՛ր և ավագնե՛ր: Ընկեր սպանե՛ր, գեներալնե՛ր և ադմիրալնե՛ր:*

*Այսօր մեր երկիրը տոնում է Սովետական Բանակի գոյության 29-րդ տարեդարձը:*

*Մեծ Լենինի կողմից հիմնված Սովետական Բանակը անցել է փառապանծ ուղի: Նրա ամբողջ պատմությունը հանդիսանում է հերոսության, Հայրենիքին անձնուրաց ծառայելու և իր զինվորական պարտքը արիաբար կատարելու կենդանի օրինակ: Դա առանձնապես վառ կերպով արտահայտվեց Հայրենական մեծ պատերազմում Սովետական Բանակի տարած նշանավոր հաղթանակներում: Հայրենիքը [illegible] չի մոռանա իր Բանակի հերոսական [illegible]*

Իր 29-րդ տարեդարձի օրը Սովետական Բանակը դիմավորում է այնպիսի պայման-ներում, երբ մեր ամբողջ ժողովուրդը լար-ված աշխատում է՝ իրագործելով պատե-րազմի հետևանքները վերացնելու, ժողովր-դական տնտեսության վերականգնման և հետագա զարգացման խնդիրները:

Մեր երկրի բանվորները, գյուղացիները և ինտելիգենցիան հաջողությամբ կատարելով նոր հնգամյակի առաջին տարվա պլանը, անձնուրաց կերպով պայքարում են ժողո-վրդական տնտեսության բոլոր ճյուղերում շինարարության տեմպերի հետագա բարձ-րացման և արտադրության աճի համար, արդյունաբերության և գյուղատնտեսության նոր վերելքի համար, լայն սպառման ապ-րանքների թողարկումը ավելացնելու համար, սովետական գիտության ու տեխնիկայի արագ աճման համար:

Միութենական ռեսպուբլիկաների Գերա-գույն Սովետների անցած ընտրությունները պսակվեցին կոմունիստների և անպարտիա-կանների բլոկի լիակատար հաղթանակով:



Դա նշանակում է, որ Սովետական հասա-րակության միասնությունը անխախտ է, որ բոլոր սովետական մարդիկ սերտորեն հա-մախմբված են իրենց կառավարության, կո-մունիստական պարտիայի շուրջը և լի են իրենց Հայրենիքի հետագա ծաղկմանը հաս-նելու վճռականությամբ:

Սովետական Բանակը խաղաղ ժամա-նակվա պայմաններում կատարելով մար-տական ուսուցման ասպարեզում իր առաջ դրված խնդիրները, պարտավոր է նույնպես ավելի առաջ շարժվել և հասնել նոր, ավելի բարձր հաջողությունների՝ մարտական ու քաղաքական պատրաստության ասպարե-զում: Այդ է պահանջում մեզանից խաղա-ղությունը ամրապնդելու գործը, մեր Հայ-րենիքի անվտանգությունը ապահովելու գործը:

Սովետական Զինված Ուժերի մարտական պատրաստության ղեկավար սկզբունքը միշտ եղել է և այժմ մնում է՝ սովորեցնել զորքե-րին այն, ինչ անհրաժեշտ է պատերազմում: Փորձը ցույց տվեց, որ ժամանակակից պա-տերազմը զորքերից պահանջում է մարտա-կան և բարոյական բարձր հատկություններ՝ ռազմական և քաղաքական լավ պատրաս-

տուլթյուն, մարտական տեխնիկայի հմուտ տիրապետում, հուսալի փոխգործողություն և ֆիզիկական մեծ դիմացկունություն։

Մեր Բանակի, Ավիացիայի և Նավատորմի ամբողջ անձնակազմի խնդիրն է՝ անդուլ կերպով, օր օրի վրա կատարելագործել իր ռազմական վարպետությունը, շարունակ խորապես ուսումնասիրել պատերազմի փորձը և հմտորեն օգտագործել այն։

Գեներալները, ադմիրալները և սպաները պարտավոր են անշեղորեն բարձրացնել իրենց տեսական-ռազմական և քաղաքական գիտելիքները, ինչպես նաև տիրապետել զորական պատրաստության մեթոդիկային, որը այնքան անհրաժեշտ է խաղաղ ուսուցման պայմաններում։

Սերժանտներն ու ավագները պետք է համառորեն տիրապետեն հրամանատարական ունակություններին, որպեսզի իրոք դառնան սպաների մերձավորագույն օգնականներ զինվորական կարգապահությունը պահպանելու, զինվորներին ու նավաստիներին սովորեցնելու և դաստիարակելու գործում։

Զինվորներն ու նավաստիները պետք է ջանասիրաբար լարելով ուժերը՝ կատա-



րելագործեն իրենց կրակային, տակտիկական, շարային, մասնագիտական և քաղաքական պատրաստությունը, իրենց կոփեն ֆիզիկապես, որպեսզի դառնան հմուտ ռազմիկներ, որոնք ընդունակ են հաղթահարելու երթային-մարտական իրադրության ամեն մի դժվարություն։

Սովորեցնելով և դաստիարակելով ստորադրյալներին, բոլոր հրամանատարներն ու պետերը պարտավոր են հոգ տանել նրանց կենցաղի, սննդի, տեղավորման և հանդերձանքի մասին, այն մասին, որպեսզի զինծառայողները ժամանակին և լրիվ բավարարվեն իրենց հասանելիք ամբողջ պարենով։

Մեր Զինված Ուժերի մարտունակության կարևորագույն պայման հանդիսանում է ամուր զինվորական կարգապահությունը, որը ամենից առաջ հիմնված է զինծառայողների բարձր գիտակցականության և քաղաքական դաստիարակության վրա։ Այդ պատճառով բոլոր հրամանատարները և պետերը անդուլ կերպով ամրապնդելով զինվորական կարգապահությունը և ցուցաբերելով խիստ պահանջկոտություն, միա-

*ժամանակ պարտավոր են ամեն օր ստորաբաժանումներին դաստիարակել Հայրենիքի նըկատմամբ նվիրվածության ոգով, զինվորական պարտքը գիտակցաբար կատարելու և Հայրենիքի պաշտպանության գործի համար յուրաքանչյուր ռազմիկի անձնական պատասխանատվության ոգով։*

*Ընկեր զինվորնե՛ր և նավաստինե՛ր, սերժանտնե՛ր և ավագնե՛ր։*

*Ընկեր սպանե՛ր, գեներալնե՛ր և ադմիրալնե՛ր։*

*Սովետական Կառավարության և մեր Կոմունիստական պարտիայի անունից ողջունում և շնորհավորում եմ ձեզ Սովետական Բանակի 29-րդ տարեդարձի առթիվ։*

*Ի նշանավորումն Սովետական Բանակի 29-րդ տարեդարձի՝* **հրամայում եմ.**

*Այսօր, փետրվարի 23-ին, սալյուտ տալ մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում, միութենական ռեսպուբլիկաների մայրաքաղաքներում, ինչպես նաև Կալինինգրադում, Լվովում, Խաբարովսկում, Վլադիվոստոկում, Պորտ-Արտուրում և հերոս քաղաքներ Լենինգրադում, Ստալինգրադում, Սևաստո-*



*պոլում ու Օդեսայում հրետանային քսան համազարկով։*

*Կեցցե՛ Սովետական Բանակը և Ռազմա-Ծովային Նավատորմը։*

*Կեցցե՛ մեր Սովետական Կառավարությունը։*

*Կեցցե՛ մեր Կոմունիստական պարտիան։*

*Կեցցե՛ մեծ սովետական ժողովուրդը։*

*Կեցցե՛ մեր հզոր Հայրենիքը։*

ՍՍՌ Միության Զինված Ուժերի Մինիստր, Սովետական Միության Գեներալիսիմուս

Ի. ՍՏԱԼԻՆ

# ՍՏԱԼԻՆՅԱՆ ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿԻ ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐՎԱ ԳԱՐՆԱՆԱՑԱՆԸ

Մեր ռեսպուբլիկայի կոլխոզային աշխատավորությունը, պարտիական ու սովետական կազմակերպությունների գլխավորությամբ, անշեղորեն կենսագործելով «Կոլխոզներում գյուղատնտեսական արտելի Կանոնադրության խախտումները վերացնելու միջոցառումների մասին» ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի 1946 թվականի սեպտեմբերի 19-ի պատմական որոշումը, հաջողությամբ փակեց Ստալինյան նոր հնգամյակի առաջին գյուղատնտեսական տարին՝ ինչպես գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման, այնպես էլ հանրային անասնապահության գլխաքանակի աճման և նրա մթերատվությունը բարձրացնելու ասպարեզում։ Կոլխոզները տըն-



տեսապես ու կազմակերպչորեն էլ ավելի ամրապնդվեցին, բարձրացավ կոլխոզնիկների նյութական-կուլտուրական մակարդակը։

Ռեսպուբլիկայի կոլխոզնիկները իրենց նկատմամբ ստալինյան հայրական հոգատարությանը պատասխանեցին արտադրական բուռն վերելքով։ Բարձր գնահատելով իրենց հարազատ պետության շահերը, նրանք բոլշևիկյան պայքար ծավալեցին 1946 թվականին երկրին ավելի շատ հաց և գյուղատնտեսական այլ մթերքներ տալու համար։ Կոլխոզները ժամկետից շուտ կատարեցին պետության հանդեպ իրենց բոլոր պարտավորությունները։ Հացամթերումների պլանից դուրս, պետական գնման կարգով, նրանք պետությանը վաճառեցին 400 հազար փութ հացահատիկ։ Բացի դրանից, ավանսի կարգով հանձնված է 200 հազար փութ հացահատիկ 1947 թվականին ՄՏԿ-ների կողմից կատարվելիք աշխատանքների դիմաց։

Ընկեր Ստալինը կոլխոզային գյուղացիության, ամբողջ սովետական ժողովրդի առջև խնդիր դրեց՝ հասնել գյուղատնտեսության արագ վերելքի, բերքատվության լուրջ

բարձրացման և բերքի կայունության մեր սոցիալիստական դաշտերում։

Այդ տեսակետից ներկայումս մեր ռեսպուբլիկայի կոլխոզային գյուղացիության, գյուղի բոլոր աշխատողների ամենագլխավոր խնդիրն է՝ առաջիկա գարնանացանի հաջող նախապատրաստումն ու անցկացումը Ստալինյան նոր հնգամյակի երկրորդ տարում գյուղատնտեսության հետագա վերելքի հասնելու, գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվությունը և անասնապահության մթերատվությունն է՛լ ավելի բարձրացնելու համար։

1947 թվականի գարնանը Հայկական ՍՍՌ-ում ցանվելու է մոտ 240 հազար հեկտար հացահատիկ, իսկ միջին բերքատվությունը հեկտարից նախատեսվում է 10 ցենտներ։

Այս մեծ խնդրի լուծումը կախված է ամենից առաջ նրանից, թե ինչպես կանցկացվի գարնանացանը, իսկ գարնանացանի հաջողությունը կախված է նրա նախապատրաստությունից։

Բերքատվության նշված աճն ապահովելու համար վճռական նշանակություն ունի բարձրորակ սերմացուն։ Սերմացուի որակը կայուն ու բարձր բերքի հիմնական պայ-



մաններից մեկն է։ Եվ պատահական չէ, որ այն կոլխոզներում, որտեղ հացահատիկային կուլտուրաների ցանքը կատարվում է լավորակ կոնդիցիոն սերմացուով, առատ բերք են ստանում։ Այդպիսիների թվին են պատկանում Ախուրյանի, Ախտայի, Նոր Բայազետի, Մարտունու, Սիսիանի, Գորիսի, Աշտարակի, Ստեփանավանի և այլ շրջանների կոլխոզները, որոնք 1946 թվականին հացահատիկային կուլտուրաների ցանքերի յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով 14-16 ցենտներ բերք ստացան։

Առաջիկա գարնանացանը լավորակ սերմացուով լրիվ և ժամանակին ապահովելը հատուկ ուշադրության առարկա պետք է հանդիսանա, որովհետև լավ սերմացուն առավ լավ բերքի հուսալի երաշխիքն է։

Ռեսպուբլիկայի կոլխոզներում գարնանացանի սերմացուի և ապահովագրական ֆոնդի առանձնացումը ներկայումս հիմնականում ավարտված է։ Առանձնացված է 284 հազար 600 ցենտներ սերմացու։ Սակայն խնդիրը դրանով չի սպառվում։ Հարկավոր է առանձնացված ամբողջ սերմացուն խնամքով զտել, համապատասխանեցնել պահանջվող կոնդիցիային, իսկ այս բանը

լրիվ ավարտված է ո՛չ ամենուրեք։ Այդ տեսակետից վատ է դրությունը Ալագյազի, Ամասիայի, Ղուկասյանի, Ղափանի, Սպիտակի և Շամշադինի շրջանների մի շարք կոլխոզներում։

Կարևորագույն խնդիր է՝ լրջորեն զբաղվել սերմացուի որակի հարցով, բոլոր կոլխոզներում ապահովել սերմացուի զտման և այն լիովին ցանքային կոնդիցիային համապատասխանեցնելու աշխատանքները, որպեսզի չկրկնվեն անցյալ տարվա սխալները, երբ որոշ կոլխոզներում ցանքը կատարվեց ո՛չ կոնդիցիոն սերմացուով և դրա հետևանքով ստացվեց ցածր բերք։

Այս տարվա գարնան ամբողջ ցանքը կատարել լավորակ կոնդիցիոն սերմացուով, այս է կարևոր խնդիրը։

Պետք է բոլոր միջոցները գործադրել կարճ ժամկետում միջկոլխոզային փոխանակման ու գնման միջոցով լրացնելու համար գարնանացան կուլտուրաների լավորակ սերմացուի լրիվ պահանջը բոլոր կոլխոզներում։

Գարնանացանն արագ և բարձր որակով կատարելու, լավ բերք ստանալու գործում մեծ դեր ունեն մեր մեքենա-տրակտորային



կայանները։ Նրանց առջև խնդիր է դրված՝ այս տարի կոլխոզային դաշտերում կատարել 420 հազար հեկտար փափուկ վարի վերածած տրակտորային աշխատանքներ։ Վարի խոշոր մասը կատարվելու է գարնանը, որի հաջողությունը կախված է ՄՏԿ-ների տրակտորային պարկի բարձր արտադրողականությունից ու անխափան աշխատանքից, իսկ այդ իր հերթին կախված է նրանից, թե ո՞րքան որակով և ժամանակին կվերականգնվի ու կնորոգվի տրակտորային պարկը։

Ռեսպուբլիկայի մեքենա-տրակտորային կայանները մտնելով Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ, ընտրությունների օրը՝ փետրվարի 9-ին ավարտեցին տրակտորների նորոգումը։ Ավարտված է նաև կցորդ ինվենտարի՝ գութանների, շարքացանների, կուլտիվատորների նորոգումը։ Սակայն դեռ ո՛չ բոլոր ՄՏԿ-ներն են ավարտել նորոգման որակը ստուգելու, տրակտորների փորձարկման աշխատանքները, ո՛չ բոլոր ՄՏԿ-ներումն է, որ նորոգված տրակտորներն ընդունված են հանձնաժողովների կողմից։

Անհրաժեշտ է ամենօրյա կոնկրետ հսկողություն սահմանել և օգնել ՄՏԿ-ներին՝ վերացնելու այն բոլոր թերությունները, որոնք գոյություն ունեն տրակտորների և գյուղատնտեսական մեքենաների նորոգման գործում։

Մեծ է մեքենատրակտորային կայանների դերը գարնանային գյուղատնտեսական աշխատանքների մեջ, սակայն չպետք է թերագնահատել նաև կենդանի քաշող ուժը, որին նույնպես աշխատանքների մի մեծ բաժին է ընկնում։ Ուստի հարկավոր է լծկանը ևս լավ նախապատրաստել գարնանային աշխատանքներին։

Գյուղատնտեսական կուլտուրաների, մասնավորապես տեխնիկական կուլտուրաների բերքատվության բարձրացման համար խոշոր նշանակություն ունի հողի ստրուկտուրան և նրա պարարտացումը հանքային ու տեղական պարարտանյութերով։ Պարարտացման էֆեկտն ավելի մեծ է լինում այն դեպքում, երբ պարարտացումը կատարվում է հիմնական վարից առաջ, ցրտահերկի կամ վաղ գարնանավարի ժամանակ։

Ալավերդու շրջանում արդեն դաշտ է փոխադրված 60 հազար տոննա գոմաղբ, Նոր



Բայազետի շրջանում գոմաղբի փոխադրման պլանը կատարված է 80 տոկոսով։ Սակայն գոմաղբի փոխադրումը մի շարք շրջաններում դանդաղ է ընթանում, դա միանգամայն անհանդուրժելի է, մանավանդ տեխնիկական կուլտուրաներ մշակող շրջաններում (Հոկտեմբերյան, Էջմիածին, Վեդի, Զանգիբասար, Իջևան, Միկոյան, Կոտայք, Ղափան և այլն), որոնց առջև խնդիր է դրված 1947 թվականին ստանալ բամբակի, ծխախոտի, ճակնդեղի է՛լ ավելի բարձր բերք։

Ստալինյան նոր հնգամյակի երկրորդ տարին, որը հանդիսանալու է սոցիալիստական հողագործության և անասնապահության հուժկու վերելքի տարի, պահանջում է բարձրացնել կիրառվող ագրոտեխնիկայի մակարդակը։ Բոլոր կոլխոզներում 1947 թվականի ընթացքում պետք է ավարտվի ցանքաշրջանառության լրիվ կիրառումը։ Այդ հնարավորություն կտեղծի բարելավելու հողի կազմությունն ու նրա բերրիությունը, զգալի չափով կլավացնի հողի նախացանքային մշակությունը, որի հետևանքով կբարձրանա բոլոր կուլտուրաների բերքատվությունը։

Ռեսպուբլիկայի 1043 կոլխոզներից 674 կոլխոզում արդեն կիրառված է խոտադաշտային ցանքաշրջանառությունը։ Նախատեսվում է 1947 թվականի ընթացքում մնացած կոլխոզներում ևս ավարտել ցանքաշրջանառության կիրառումը։

Սակայն միայն ցանքաշրջանառություն մշակելը, կուլտուրաների ճիշտ հաջորդականություն սահմանելը դեռ բավական չէ։ Կարևոր է, որ ցանքաշրջանառությունները լրիվ ու ճիշտ իրացվեն, իսկ այդ նշանակում է, որ ցանքաշրջանառությամբ սահմանված մշակույթների փոխհարաբերությունն ու հաջորդականությունը չպետք է խախտվի։ Պետք է պահպանել ու կիրառել սահմանված ագրոտեխնիկական միջոցառումների կոմպլեքսը՝ բարձր բերքի անհրաժեշտ պայմաններ ստեղծելու համար։

Որոշ կոլխոզներում թեև ցանքաշրջանառությունն արդեն լրիվ կիրառված է, սակայն նրա իրացումը դեռ բավարար համարել չի կարելի։ Կան շրջաններ (Բասարգեչար, Հոկտեմբերյան, Վեդի, Արթիկ, Կոտայք, Ախուրյան), որտեղ թերագնահատվում է ցանքաշրջանառությունը։ Մինչդեռ չափազանց մեծ է ցանքաշրջանառության



դերը մեր կոլխոզների կազմակերպականտնտեսական ամրապնդման և գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման գործում։ Ուստի ամենայն լրջությամբ պետք է զբաղվել ցանքաշրջանառության կիրառման ու նրա ճիշտ իրացման խնդիրներով։ Անհրաժեշտ է ընդարձակել բազմամյա խոտաբույսերի ցանքաշրջանառությունները, արմատացնել կուլտուրական ցելերի կիրառումը, դրանց ամառային մշակությունը, պահպանել գյուղատնտեսական կուլտուրաների տեղաբաշխման հիմնական կանոնները։

Գարնանացանի հաջող անցկացման և մշակվող կուլտուրաների բերքատվության բարձրացման գործում խոշոր նշանակություն ունի կոլխոզային լայն մասսաների ագրո-տեխնիկական ուսուցումը։ Կոլխոզային արտադրության մեջ աշխատողները պետք է տիրապետեն նորագույն ագրոտեխնիկական ձեռնարկումներին, դրանց կիրառման մեթոդներին ու տեխնիկային, ծանոթ լինեն սովետական առաջավոր ագրոնոմիական գիտության նորագույն նվաճումների և կոլխոզային դաշտերի անվանի մշակների փորձի հետ։

Մինչև գարնանացանն սկսելը կարճատև դասընթացների միջոցով պատրաստվելու են 20 հազար կոլխոզային աշխատողներ՝ դաշտավարության, այգեգործության, տեխնիկական կուլտուրաների և անասնապահության գծով։

Թե ինչպիսի խոշոր նշանակություն ունի կոլխոզնիկների ագրոտեխնիկական ու զոոտեխնիկական ուսուցումը բերքատվության և անասնապահության մթերատվության բարձրացման գործում, կարելի է համոզվել առանձին կոլխոզների, բրիգադաների, օղակների աշխատանքի փորձով և ստացված արդյունքներով։

Նոր Բայազետի, Ախտայի, Աշտարակի, Սիսիանի, Մարտունու շրջանների կոլխոզների բազմաթիվ դաշտավարական բրիգադաներ, լրիվ կիրառելով ագրոտեխնիկայի պահանջները՝ հողի նախացանքային մշակության, ցանքերի մշակման և բերքահավաքի ասպարեզում, հասել են հացահատիկային կուլտուրաների առատ բերքի, յուրաքանչյուր հեկտարի միջին բերքատվությունը հասցնելով 15–20 ցենտների։

Նոր Բայազետի շրջանի Հացառատ գյուղի կոլխոզում ընկ. Խաչատրյանի բրիգադան



75 հեկտար հողամասի յուրաքանչյուր հեկտարից ստացավ 42 ցենտներ հացահատիկ։

Բազմաթիվ բրիգադաներ և օղակներ բարձր ցուցանիշներ են ձեռք բերել նաև տեխնիկական կուլտուրաների ասպարեզում։

Շամշադինի շրջանի ընկեր Ստալինի անվան կոլխոզի առաջին ծխախոտագործական օղակը իրեն ամրացված երեք հեկտար հողամասում 1946 թվականին ստացավ հեկտարից 24,5 ցենտներ ընտիր տեսակի ծխախոտ։

Արտաշատի շրջանի Ներքին Դվինի կոլխոզում ընկ. Սիրուշ Քոչարյանի օղակը յուրաքանչյուր հեկտարից ստացավ 42 ցենտներ բամբակ։

Կիրովականի շրջանի Վարդաբլուր գյուղի կոլխոզի երրորդ բրիգադան հեկտարից միջին հաշվով ստացել է 528 ցենտներ ճակընդեղ։

Կարելի է նման շատ օրինակներ բերել, որոնք ակնառու կերպով ցույց են տալիս գյուղատնտեսության առաջավորների ձեռք բերած հաջողությունները։

Այդ հաջողություններին նրանք հասել են գյուղատնտեսական կուլտուրաների մշակման ագրոտեխնիկային լավագույն ձևով

տիրապետելու շնորհիվ։ Հետևապես, գարնանացանի հաջող անցկացումն ու բերքատվության բարձրացումը սերտորեն կապված է արտադրության մեջ աշխատող կոլխոզնիկների ագրոտեխնիկական ուսուցման հետ, որի վրա պետք է լուրջ ուշադրություն դարձնել և մինչև գարնանացանի սկսվելը լրիվ ավարտել կոլխոզնիկների ագրոտեխնիկական ուսուցումը։

Բացի դասընթացներից, անհրաժեշտ է նաև բոլոր կոլխոզներում կոլխոզնիկների համար կազմակերպել ագրոտեխնիկական խմբակներ, հատուկ զեկուցումներ՝ ագրոտեխնիկական կարևոր հարցերի շուրջը։

Գարնանացանի նախապատրաստությունը պետք է սերտորեն կապված լինի կոլխոզների կազմակերպական-տնտեսական ամրապնդման համար մղվող պայքարի հետ։ Անհրաժեշտ է լայն կերպով պարզաբանել և ամեն մի կոլխոզնիկի սեփականությունը դարձնել ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1946 թվականի սեպտեմբերի 19-ի որոշումը՝ «Կոլխոզներում գյուղատնտեսական արտելի Կանոնադրության խախտումները վերացնելու միջոցառումների մասին»։ Ակտիվ պայքարը



գյուղատնտեսական արտելի Կանոնադրության բոլոր խախտումները վերացնելու, Կանոնադրության յուրաքանչյուր կետը խստիվ պահպանելու և կիրառելու համար, մեծ չափով կնպաստի գարնանացանի հաջող նախապատրաստմանն ու անցկացմանը։

Գարնանացանի հաջող անցկացման գործում չափազանց մեծ նշանակություն ունի աշխատանքի ճիշտ կազմակերպումը, ուժերի ճիշտ դասավորումը։ Արդեն այժմյանից հարկավոր է լրջորեն զբաղվել աշխատանքի կազմակերպման հարցերով, վերանայել ու ամրացնել բրիգադաների և օղակների կազմը, դասավորել ուժերը գարնանացանի աշխատանքների վճռական հատվածներում, կազմել աշխատանքային ու արտադրական պլաններ ինչպես ամբողջ կոլխոզի, այնպես էլ առանձին բրիգադաների ու օղակների համար։ Այդ պլանների մեջ պետք է մանրամասն ու ճշգրիտ մատնանշված լինի՝ թե ինչպես մշակել յուրաքանչյուր հողամաս, ինչպիսի նյութերով այն պարարտացնել, պետք է նշված լինեն այն ագրո-ձեռնարկումները, որոնց կիրառումով կապահովվի բերքատվության առաջադրանքների կատարումը բարձր ցուցանիշներով։

Մեծ և պատասխանատու խնդիրներ են դրված սոցիալիստական գյուղատնտեսության առջև Ստալինյան նոր հնգամյակի երկրորդ տարում։ Հայրենիքի և սովետական ժողովրդի շահերը պահանջում են, որ մեր կոլխոզային գյուղացիությունն էլ ավելի ընդարձակի ցանքերի տարածությունը, բարելավի գյուղատնտեսական աշխատանքների որակը, ավելացնի հացահատիկային և այլ կուլտուրաների բերքատվությունը։ Իսկ դրա երաշխիքն է գարնանացանի աշխատանքները սեղմ ժամկետում, կազմակերպված և ագրոտեխնիկական բարձր ցուցանիշներով կատարելը։

Մեր շրջանային պարտիական և սովետական կազմակերպությունների խնդիրն է՝ բոլոր կոլխոզային բրիգադաները, օղակները, ՄՏԿ-ների և հողային օրգանների աշխատողներին, ամբողջ կոլխոզային աշխատավորությանը ներգրավել սոցիալիստական մրցության մեջ՝ Ստալինյան նոր հնգամյակի երկրորդ տարվա գարնանացանը հաջողությամբ և բարձր ցուցանիշներով կատարելու համար։

Հ. ՄԱՐՋԱՆՅԱՆ
ՀԿ(բ)Պ Կենտկոմի Գյուղատնտեսական բաժնի վարիչ

## ՆՅՈՒԹԵՐ ԶԵԿՈՒՅՑՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕՐԸ

Ամեն տարի մարտի 8-ին լայնածավալ Սովետական երկրի աշխատավորները, ամբողջ աշխարհի ազատասեր ժողովուրդների ավանգարդում, տոնում են Կանանց Միջազգային օրը, հանրագումարի բերելով այն նվաճումները, որ ձեռք է բերել կինը Սովետական Միության մեջ, պետական ու տնտեսական կյանքի, գիտության և կուլտուրայի բոլոր բնագավառներում։

Կնոջ ազատագրումը, հասարակական կյանքում նրա ակտիվ մասնակցությունն ապահովող պայմաններ ստեղծելը մարդկության առաջադիմության կարևոր գործոնն է և դրա պայմաններից մեկը։ Կնոջ վիճակը այս կամ այն երկրում՝ որոշում է այդ երկրի կուլտուրական զարգացման աստիճանը։ Կնոջ ազատագրման համար վաղուց ի վեր պայքարել են մարդկային հասարակության լավագույն ներկայացուցիչները։ Սակայն

այդ դարավոր սոցիալական հարցն իր լիակատար լուծումն ստացավ միայն սոցիալիզմի երկրում, Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի շնորհիվ։

Սոցիալական այդ մեծ ակտի ողջ նշանակությունն ըմբռնելու համար պետք է հիշել կնոջ վիճակը մինչռևոլյուցիոն անցյալում։

Ցարական Ռուսաստանում կինը չարքաշ կյանք էր վարում տանը՝ ընտանիքում, իսկ դուրսը նրա աշխատանքը շատ ասպարեզներում ընդունելի ու հարգի չէր։ Ծայրահեղ չքավորությունը կանանց մղում էր դեպի վարձու աշխատանք։ Արդյունաբերության մեջ՝ սևագործություն, գյուղատնտեսության մեջ՝ բատրակություն—ահա այն ասպարեզները, ուր կինը մուտք ուներ, և այդտեղ էլ նրա աշխատանքը վարձատրվում էր տղամարդու աշխատանքից շատ ավելի ցածր։

Ցարական իշխանության օրով վարձու աշխատանք կատարող կանանց 80 տոկոսը խոհարարներ, սևագործներ ու բատրակներ էին, 13 տոկոսը աշխատում էր գլխավորապես տեքստիլ արդյունաբերության մեջ և միայն 4 տոկոսը դպրոցներում, դրադարաններում, դեղատներում ու հիվանդանոցներում։



Ընկեր Ստալինը այսպես է նկարագրում կնոջ վիճակը նախքան Հոկտեմբերյան ռևոլյուցիան.

«Ինչ՞ էր ներկայացնում իրենից կինն առաջ, հին ժամանակ։ Քանի կինը հոր տանն էր, նա հաշվվում էր աշխատավորներից այսպես ասած՝ վերջինը։ Աշխատում էր նա հոր համար, աշխատում էր առանց ձեռքերը ծալելու, և հայրը դեռ նախատում էր նրան՝ «Ես եմ քեզ կերակրում»։ Երբ նա ամուսնանում էր, աշխատում էր ամուսնու համար, աշխատում էր այնպես, ինչպես ստիպում էր նրան ամուսինը, և էլի ամուսինն էլ էր նրան նախատում՝ «Ես եմ քեզ կերակրում»։

Սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը հիմնովին փոխեց մեր երկրում կնոջ կյանքը, նրա ապրելակերպը, կինը դարձավ տղամարդու հետ իրավահավասար, նրա քաղաքացիական իրավունքները պաշտպանվում են օրենքով և ոչ միայն պաշտպանվում են, այլև ստեղծվել են բոլոր պայմանները՝ օրենքի անշեղ կենսագործման համար։ Լենինը սովորեցնում է, որ կնոջ փաստական ազատագրման, նրա իրավունքները տղամարդու իրավունքներին հավասարեցնելու համար բավական չէ միայն օրենքով ազատագրել

նրան, նաև անհրաժեշտ է, որ կանայք ակտիվ կերպով մասնակցեն սոցիալիստական արտադրությանը, ներգրավվեն երկրի կառավարման գործում։

Բոլշևիկների պարտիան, ընկեր Ստալինի ղեկավարությամբ, Սովետական իշխանության տարիներին համառ ու հետևողական պայքար ծավալեց կանանց բազմակողմանի աճման ու զարգացման համար, ստեղծելով նյութական ու ամեն տեսակի այլ պայմաններ, Լենինի այդ ցուցումն իրագործելու համար։

Սովետական երկրում կնոջ իրավունքները և նրա դիրքը հասարակական կյանքում վառ կերպով արտահայտված են Ստալինյան կոնստիտուցիայի մեջ, որի 122-րդ հոդվածն ասում է՝

«Կնոջը ՍՍՌՄ-ում տղամարդուն հավասար իրավունքներ են տրվում տնտեսական, պետական, կուլտուրական ու հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում»։

ՍՍՌՄ-ում կինը ակտիվ մասնակցություն ունի երկրի կառավարման գործում։ Սովետական իշխանությունը կնոջը տվել է լայն հնարավորություններ՝ մասնակցելու երկրի



հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում։ Այդ մասնակցությունն ապահովված է նաև մոր և մանկան շահերի պետական պաշտպանությամբ, տասնյակ հազարավոր մանկամսուրների, մանկապարտեզների, կաթնախոհանոցների, ծննդատների, հասարակական խոհանոցների, լվացքատների կազմակերպմամբ և այլ միջոցառումների իրականացմամբ։

Սովետական կինը ակտիվ մասնակից է սոցիալիստական շինարարության բոլոր բնագավառներում։ Փաստերը պերճախոս են այդ առթիվ։

Մոտ կես միլիոն կանայք ընտրված են միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սովետներում և տեղական սովետներում, 277 կանայք ՍՍՌ Միության Գերագույն Սովետի դեպուտատներ են։ Հայկական ՍՍՌ-ում տեղական սովետների անդամ են 2678 կանայք։ Այս տարվա փետրվարի 9-ին Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետում ընտրված 269 դեպուտատներից 75-ը կանայք են, այդ թվում առաջավոր գիտնականներ, արվեստի և կուլտուրայի ֆրոնտի նշանավոր գործիչներ, արդյունաբերության առաջավորներ, կոլխոզային դաշտերի հարվածայիններ։

ՍՍՌՄ-ում ավելի քան 350 հազար առաջավոր կոլտնտեսուհիներ բրիգադաների և կոլտնտեսային ֆերմաների ղեկավարներ են։ 15 հազար կանայք կոլտնտեսի նախագահներ կամ նրանց տեղակալներ են, 250 հազար կանայք աշխատում են որպես տրակտորային բրիգադաների բրիգադիրներ, տրակտորիստներ և կոմբայնավարներ։

Հայկական ՍՍՌ-ի ՄՏԿ-ներում աշխատողների 13,4 տոկոսը և սովխոզներում աշխատողների 38,2 տոկոսը կանայք են։

ՍՍՌՄ արդյունաբերության մեջ աշխատում են ավելի քան 250 հազար կին ինժեներներ և տեխնիկներ։ Հետաքրքիր է նշել, որ 1897 թվականին Պետերբուրգում եղել է միայն 3 կին ինժեներ, իսկ 1939 թվականին Լենինգրադում կար 23 հազար 726 կին ինժեներ։ Կանանց մենք տեսնում ենք տեքստիլ և սննդի արդյունաբերության մեջ, հանքերում և դոմնաների մոտ։ Արդյունաբերության բոլոր ճյուղերում կինն ունի իր պատվավոր տեղը։ Հայկական ՍՍՌ արդյունաբերության մեջ աշխատող բանվորների 34 տոկոսից ավելին կանայք են։

ՍՍՌՄ ժողովրդական լուսավորության օրգաններում աշխատում են մեկ միլիոն



կանայք, առողջապահության ցանցում աշխատում են մոտ 100 հազար բժշկուհիներ, իսկ մինչ ռևոլյուցիան ցարական Ռուսաստանում եղել է միայն 2000 կին բժիշկ։ Մեր ռեսպուբլիկայում լուսավորության ցանցում աշխատում են մոտ 12 հազար կանայք։

Սովետական Միության գիտա-հետազոտական ինստիտուտներում և լաբորատորիաներում գիտական աշխատանք են կատարում 33 հազար կանայք։ 1946 թվականին ՍՍՌՄ-ում 116 կանանց շնորհվեց Ստալինյան մրցանակի լաուրեատի բարձր կոչում՝ գիտության, տեխնիկայի, արվեստի և գրականության ասպարեզում աչքի ընկնող աշխատությունների համար։

Մեր ռեսպուբլիկայի գիտա-հետազոտական հիմնարկներում աշխատողների 52 տոկոսը և առողջապահության ֆրոնտում աշխատողների 58 տոկոսը կանայք են։

ՍՍՌՄ-ում ավելի քան 750 հազար մայրեր, որոնք ծնել և դաստիարակել են 5—10 երեխա, պարգևատրված են «Մայրական փառք» շքանշանով և մեդալներով։ 1946 թվականին սովետական 5.850 կանայք ստացան «Հերոսուհի մայր» բարձր կոչումը։

Սովետական կանայք տվել են փայլուն ներկայացուցիչներ մեր երկրի կյանքի ու պայքարի տարբեր բնագավառներում։ Հիշենք Աննա Իվանովնա Շչետինինային, որը որպես օվկիանոսային նավի նավապետ, կատարել է երկու շուրջերկրյա ճանապարհորդություն, հիշենք օդաչուհիներ Վալենտինա Գրիզոդուբովային, Պոլինա Օսիպենկոյին, Մարինա Ռասկովային, որոնք սահմանել են մի քանի միջազգային ռեկորդներ։

Բացառիկ էր սովետական կնոջ մասնակցությունը Հայրենական Մեծ պատերազմում։ Անհուն հայրենասիրությամբ համակված և դեպի թշնամին կատաղի ատելությամբ լի, սովետական կանայք ոտքի ելան մեր երկիրը ներխուժած ֆաշիստական բարբարոսների դեմ, որոնք հրկիզում էին մեր գյուղերն ու քաղաքները, արատավորում կանանց պատիվը, կանանց ու աղջիկներին քշում էին Գերմանիա ստրկության։ Հայրենական պատերազմի ճակատներում բազմաթիվ կանայք հերոսաբար կռվում էին նենգ թշնամու դեմ։



Պատերազմի առաջին օրերից, արձագանքելով մեծ առաջնորդ ընկեր Ստալինի կոչին՝ ամեն ինչ ռազմաճակատի համար, ամեն ինչ հաղթանակի համար, միլիոնավոր կանայք գնացին գործարաններն ու ֆաբրիկաները, հանքերն ու կոլխոզային դաշտերը՝ փոխարինելու համար ռազմաճակատ մեկնած իրենց ամուսիններին, եղբայրներին և զավակներին։ Եվ, եթե պատերազմի ամբողջ ընթացքում կոլխոզային գյուղն անխափան կերպով մատակարարեց ռազմաճակատին և երկրին պարենամթերք, իսկ արդյունաբերությունը՝ հումք, այդ գործում մեծ բաժին ունի սովետական գեղջկուհին։ Եթե մեր երկրի արդյունաբերությունը, բոլշևիկյան պարտիայի անմիջական ղեկավարությամբ, արագ վերակառուցվեց ռազմական ձևով և ապահովեց Սովետական Բանակը անհրաժեշտ ռազմական տեխնիկայով ու հանդերձանքով, այդ գործում մեծ բաժին ունի սովետական կինը։

Սովետական կինը ոչինչ չխնայեց Հայրենիքի համար, հաղթանակի համար։ Կանայք մեծ սիրով մարտիկների համար տաք հագուստ ու այլ նվերներ էին ուղարկում ռազմաճակատ, բանակայինների ընտանիքներին

անհրաժեշտ օգնություն էին ցույց տալիս, կազմակերպում էին ֆաշիստների կողմից սպանված ու խոշտանգված ծնողների որբ երեխաների խնամքն ու դաստիարակությունը։

Հազարավոր կանայք մեծ սիրով տալիս էին իրենց արյունը՝ վիրավոր ռազմիկներին փրկելու համար։ Նույնիսկ բլոկադայի պայմաններում, քաղցից ու ցրտից տառապող 6000 լենինգրադցի կանայք տալիս էին իրենց արյունը Լենինի քաղաքը պաշտպանող վիրավոր մարտիկների կյանքը փրկելու համար։

«Պատմության մեջ ընդմիշտ կմտնեն ֆաբրիկաներում ու գործարաններում, կոլխոզներում ու սովխոզներում աշխատանքի հիմնական ծանրությունն իրենց ուսերի վրա կրած սովետական կանանց ու մեր պանծալի երիտասարդության աշխատանքային անօրինակ սխրագործությունները։ Հանուն Հայրենիքի պատվի և անկախության սովետական կանայք, պատանիներն ու աղջիկներն արիություն ու հերոսություն են հանդես բերում աշխատանքի ճակատում։ Նրանք արժանի դարձան իրենց հայրերին ու զավակներին, ամուսիններին ու եղբայրներին, որոնք Հայ-



րենիքը պաշտպանում են գերմանա-ֆաշիստական ճիվաղներից» (Ստալին)։

Սովետական մարդիկ չեն մոռանա պիշերային ռմբակոծիչ ավիացիոն գնդի կանանց։ Այդ գունդը, որի հրամանատարն էր գվարդիայի մայոր Եվդոկիա Բերշանսկայան, անօրինակ համարձակություն ու քաջություն էր հանդես բերում թշնամու դեմ մղվող մարտում։ Մեր հիշողության մեջ հավերժ կապրեն Ստալինգրադի պաշտպանության մասնակից քաջարի օդաչուհիներ Լիդիա Լիտվյակի և Վալերիա Խոմյակովայի անօրինակ սխրագործությունները, որոնք իրենց արագընթաց կործանիչներով ոչնչացնում և փախուստի էին մատնում ֆաշիստական օդային ավազակներին։

Հայրենիքի նկատմամբ անհուն սերը միայն կարող էր ծնել այնպիսի հերոսուհիներ, ինչպես՝ Զոյա Կոսմոդեմյանսկայան, Լիզա Չայկինան, Անտոնինա Պետրովան, Ղրիմի պարտիզանուհի Մարիա Բայդան և շատ ուրիշներ, որոնք թշնամու դեմ կռվեցին հերոսաբար։

Ռազմաճակատներում անձնվիրաբար էին աշխատում սանիտարուհիներն ու բժշկուհի-

ները, որոնք թեժ մարտերում, գնդակների տարափի տակ, փրկեցին հարյուր-հազարավոր վիրավոր մարտիկների ու սպաների կյանքը, հոգատար խնամում և բուժում էին նրանց գոսպիտալներում։

Հայրենական Մեծ պատերազմում ցուցաբերած արիության և քաջության համար 120 հազար կին մարտիկներ և սպաներ պարգևատրվել են շքանշաններով ու մեդալներով։ 62 կին ռազմիկների շնորհված է Սովետական Միության Հերոսի բարձր կոչում։ 7807 կանայք պարգևատրված են «Հայրենական պատերազմի պարտիզանին» առաջին և երկրորդ աստիճանի մեդալներով։ Երեք կին երկաթուղայինների շնորհված է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում։

***

Սովետական կնոջ՝ ռազմաճակատի և թիկունքի հերոսուհու կերպարը ոգեշնչում և օրինակ էր ծառայում ազատասեր երկրների կանանց համար, պայքարի կոչելով նրանց ընդդեմ գերմանա-ֆաշիստական զավթիչների, որոնք անլուր տառապանքներ պատճառեցին օկուպացված երկրների ժողովուրդներին։ Դիմադրության ջոկատներում և պար-



տիզանների շարքերում կանայք ոչնչացնում էին գերմանական օկուպանտներին՝ հանուն իրենց ազատ կյանքի։

Հարավսլավիայի ժողովրդական Ազատագրական բանակի շարքերում մարտնչում էին ավելի քան 100 հազար կանայք, որոնցից շատերը զոհվեցին թշնամու դեմ մղված մարտերում։ Մոտ երկու միլիոն հարավսլավական կանայք թիկունքում, անասելի ծանր պայմաններում, անդուլ կերպով աշխատում էին իրենց հարազատ բանակին պարենամթերք ու ռազմամթերք մատակարարելու համար։ Նրանք գերադասում էին զոհվել պայքարում, քան-թե ապրել գերմանական զավթիչների լծի տակ իբրև ստրուկ։

Ֆրանսիայում, չնայած դաժան տեռորին, հազարավոր կանայք որպես դիմադրության կազմակերպության անդամներ, արիաբար մարտնչում էին ֆաշիզմի դեմ։ Վտանգի ենթարկելով իրենց կյանքը, նրանք զենք էին փոխադրում, աշխատում էին իբրև կապի գործակալներ, անլեգալ թռուցիկներ էին տպագրում և տարածում։

Ֆաշիստական օկուպանտների դեմ մղված պայքարում անօրինակ շատ սխրագործություններ են կատարել կանայք Լեհաստա-

նում, Չեխոսլովակիայում, Բուլղարիայում, Ալբանիայում և այլ երկրներում։

Հաղթանակից հետո ազատասեր երկրների կանայք պայքարում են կայուն և տևական խաղաղության համար։

1945 թվականի նոյեմբերին Փարիզում գումարված Կանանց Միջազգային կոնգրեսը քննության առավ մի շարք կարևորագույն հարցեր՝ ֆաշիզմը վերջնականապես ոչնչացնելու, դեմոկրատական ազատությունների համար պայքարելու գործում կանանց միջազգային շարժման անելիքների մասին։ Կանանց միջազգային շարժման պատմության մեջ առաջին անգամ աշխարհի բոլոր ծայրերից կոնգրեսի էին հավաքվել զանազան ռասայի և ազգության, դասակարգային ու քաղաքական տարբեր համոզմունքների տեր առաջավոր կանայք, որոնց միավորում է խաղաղության համար պայքարելու միասնական ձգտումը։

Կոնգրեսին 44 երկրներից մասնակցում էին 81 միլիոն կազմակերպված կանանց ներկայացուցիչներ։ Սովետական Միությունից կոնգրեսին մասնակցում էին 41 կին, այդ թվում մեկ կին Սովետական Հայաստանից։



***

Մեծ է և պատասխանատու կնոջ դերը հետպատերազմյան խաղաղ շինարարության շրջանում։

Այս տարի Կանանց Միջազգային օրը տոնվում է Ստալինյան նոր հնգամյակի երկրորդ տարվա ծավալուն շինարարության պայմաններում, երբ սովետական ժողովուրդը բուժում է պատերազմի հասցրած վերքերը, լծվել է երկրի ողջ ժողովրդական տնտեսության վերականգնման ու հետագա զարգացման, նրա հզորությունն էլ ավելի ամրապնդելու մեծ գործին։

Գործարաններում, ֆաբրիկաներում, հանքահորերում, կոլխոզային դաշտերում, շինարարության մեջ, ամենուրեք նոր հնգամյակի երկրորդ տարվա պլանների կատարման համար ծավալված սոցիալիստական մրցության մեջ, որի նշանաբանն է՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 30-րդ տարեդարձը դիմավորել տարեկան պլանները կատարած, առաջին շարքերում պետք է քայլեն նաև կանայք։

Բազմազան են սովետական կանանց աշխատանքային սխրագործությունները, որոնք

մտել են Դենցաղի մեջ, դարձել են կոլխոզի, գործարանի, ֆաբրիկայի առօրյան։

Երևանի Կարի առաջին գործարանում Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ ընկ. Շուշիկ Բաղդասարյանն աշխատում է չորս դազգահի վրա, տալով բարձրորակ արտադրանք։ Նա ամսվա պլանները կատարում է 250—280 տոկոսով։ Ընկ. Բաղդասարյանի աշակերտուհի Մարուշ Սողոմոնյանը, հետևելով իր վարպետի օրինակին, ամսվա պլանը կատարում է 200 տոկոսով։

Կոշիկի երրորդ գործարանի կոշկակարուհի ընկ. Ռոզա Սարգսյանը, աշխատելով կոշիկ կարող մեքենայի վրա, օրվա նորման կատարում է 200—260 տոկոսով։ Նա ամեն օր երկրին տալիս է 350—400 զույգ կոշիկ։

Էջմիածնի շրջանի Այնալու գյուղի առաջավոր կոլխոզնիկուհի, Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով պարգևատրված Զաբել Գրիգորյանը բամբակի հավաքման պլանը կատարել է 130 տոկոսով։

Ինչպես ամբողջ Սովետական Միության մեջ, նույնպես և մեր ռեսպուբլիկայի ձեռնարկություններում, լայն արձագանք և ընդունելություն է գտել սոցիալիստական արդյունաբերության տաղանդավոր ու խիզախ



նովատորներից մեկի՝ Մոսկվայի «Պարիժսկայա Կոմունա» կոշիկի ֆաբրիկայի ձևող վարպետ ընկ. Վասիլի Մատրոսովի առաջարկած աշխատանքային մեթոդը։ Ընկ. Մատրոսովը մեկ տարում կատարեց երկու և կես տարվա արտադրական նորմա, գերազանցեց արտադրության նախապատերազմյան մակարդակը, տնտեսեց 12 հազար դեցիմետր կաշի և առաջարկեց աշխատանքի այնպիսի մեթոդ, որն ապահովում է ոչ միայն անհատ բանվորների, այլև ողջ ցեխի, գործարանի առաջնությունը, ստեղծում է ընդհանուր վերելք, ետ մնացողներին օգնում է՝ հասնելու առաջավորների մակարդակին։

Մեր աշխատավոր կանանց պարտքն է՝ ակտիվորեն արձագանքել նովատոր Վասիլի Մատրոսովի առաջարկին, հասնել այն բանին, որ բոլոր կանայք լինեն արտադրության մեջ առաջավորներ։

Ներկայումս մեր Ռեսպուբլիկայի կոլխոզային գյուղացիությունը բուռն թափով ձեռնամուխ է եղել առաջիկա գարնանացանի նախապատրաստությանն ու անցկացմանը։ Այս տարվա գարնանացանը վճռական նշանակություն ունի մեր երկրի աշխատավորության կենսական մակարդակի բարձրացման

գործում: Կոլտնտեսականները պետք է ակտիվ մասնակցություն ունենան գարնանացանի հաջող անցկացմանը, քաջ գիտակցելով, որ դրանից է կախված այս տարվա բարձր բերքը, գյուղատնտեսության հետագա վերելքն ու զարգացումը:

Սովետական կանայք, ամբողջ սովետական ժողովրդի հետ միասնաբար, սերտորեն համախմբված բոլշևիկների պարտիայի և մեծ առաջնորդ ընկեր Ստալինի շուրջը, է՛լ ավելի ակտիվորեն կմասնակցեն Ստալինյան նոր հնգամյակի պլանների կատարմանը, նորանոր նվաճումներ ձեռք կբերեն կոմունիստական հասարակարգի կառուցման գործում:

ԳՈՀԱՐ ԱՍՏՎԱԾԱՏՐՅԱՆ
Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Ռադիոֆիկացիայի և Ռադիոհաղորդման կոմիտեի նախագահ

— ◆ —

ԿԱՐԴԱ ԲԱՐՁՐԱՁԱՅՆ

# ՄԱՆԱԾԱԳՈՐԾ ԱՆԳԻՆ ԱՐՍԵՆՅԱՆԸ

18 տարի է ինչ Անգին Արսենյանն աշխատում է Լենինականի ընկեր Մոլոտովի անվան մանվածքային գործարանում: Այդ ժամանակամիջոցում նա մեծ առաջադիմություն է ցուցաբերել, մանող աշակերտուհուց դառնալով ճանաչված մանող վարպետուհի:

Անգինն սկզբում աշխատում էր մեկ դազգահի վրա, ապա՝ երկու, իսկ Հայրենական մեծ պատերազմի օրերին, երբ նրա ընկերը թողեց դազգահը և ռազմաճակատ մեկնեց, ի պատասխան մեծ Ստալինի կոչի՝ Անգին Արսենյանը կանգնեց նաև երրորդ դազգահի առջև: Այդ օրվանից նախատեսված 575 իլիկի փոխարեն նա աշխատեցնում է 1284 իլիկ:

Չի եղել ամիս կամ տարի, որ Անգին Արսենյանը չկատարի ու գերակատարի իր

պլանները։ Ստալինյան նոր հնգամյակի առաջին տարվա իր պլանը նա կատարեց 7 ամսում և պլանից ավելի երկրին տվեց 10 հազար 597 կիլոգրամ թել։ Նրա միջին աշխատավարձը կազմում է 1600 ռուբլի։ Ռեսպուբլիկական մրցություններում արդեն չորրորդ ամիսն է, ինչ ընկ. Արսենյանն առաջնություն է շահում, որի համար, բացի հիմնական աշխատավարձից, նա յուրաքանչյուր ամիս 1000 ռուբլի լրացուցիչ պարգև է ստանում Հայկական ՍՍՌ Տեքստիլ Արդյունաբերության մինիստրությունից։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների նախօրյակին՝ փետրվարի 8-ին անվանի ստախանովականուհին կատարեց երկու ամսվա պլանը 120 տոկոսով։

Անգին Արսենյանը չի սահմանափակվում միայն պլանները կատարելով ու գերակատարելով, չնայած դա նրա գլխավոր խնդիրն է։ Նա միաժամանակ որակյալ կադրեր է աճեցնում։ Նրա աճեցրած 8 մանող բանվորուհիները աչքի են ընկնում իրենց լավ աշխատանքով։ Դրանցից Արաքսյա Գևորգյանն ու Հոռոմ Գևորգյանը ներկայումս աշխատում են իրենց վարպետուհու հետ և



ամեն օր սիստեմատիկաբար գերակատարում են պլանները։

Իր օրինակելի աշխատանքի համար Անգին Արսենյանին պատիվ վիճակվեց 1939 թվականին մասնակցել Մոսկվայում հրավիրված տեքստիլ աշխատողների համամիութենական համաժողովին։

Ընկ. Արսենյանն արժանացել է կառավարական պարգևների — նա պարգևատրված է «Պատվո նշան» շքանշանով, «Կովկասի պաշտպանության համար» և «1941—1945 թ. թ. Հայրենական Մեծ պատերազմում ցուցաբերած քաջարի աշխատանքի համար» մեդալներով։

Ընկ. Անգին Արսենյանը հասարակական ակտիվ աշխատող է։ Դեռ 1938 թվականին նա ընտրվել էր Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ։ Ընկ. Արսենյանը պատվով արդարացրեց ժողովրդական ընտրյալի բարձր կոչումը։ 1947 թվականի փետրվարի 9-ին նա նորից միահամուռ կերպով ընտրվեց Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ։

Ի. ԽԱՉԱՏՐՅԱՆ

— ◆ —

# ԱՄՆ-Ի ՀԵՏՊԱՏԵՐԱԶՄՅԱՆ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Երկրորդ համաշխարհային պատերազմն ավարտվելու ժամանակից ի վեր Ամերիկայի Միացյալ Նահանգների արտաքին քաղաքականության մեջ կատարվել են լուրջ փոփոխություններ։ Այդ փոփոխությունների իմաստն այն է, որ ԱՄՆ-ի կառավարող շրջանները նահանջել են քաղաքականության այն դեմոկրատական ուղղությունից, որով ընթանում էր Ֆ. Ռուզվելտի կառավարությունը։

ԱՄՆ-ի հետպատերազմյան արտաքին քաղաքականության բնույթը բխում է երկրի ներքաղաքական իրադրությունից։ Պատերազմի ընթացքում զգալիորեն աճեց Միացյալ Նահանգների տնտեսական հզորությունը։ ԱՄՆ-ի արդյունաբերական պրոդուկցիան աճեց ավելի քան երկու անգամ, ազգային եկամուտը համարյա կրկնապատկվեց։



Պատերազմը նպաստեց ամերիկյան կապիտալիստների անասելի հարստացմանը, նրանց շահույթներն աճեցին մի քանի անգամ։ Հարստացան գերազանցապես խոշոր կապիտալիստական մոնոպոլիաները, որոնք պատերազմի վերջին իրենց ձեռքում կենտրոնացրին երկրի ամբողջ արդյունաբերական սարքավորման մոտ մեկ երրորդ մասը։ Մոնոպոլիստական կապիտալի դիրքերի ուժեղացումը չէր կարող ազդեցություն չգործել ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության վրա։

Վ. Ի. Լենինը «Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիան» աշխատության մեջ ցույց է տվել, որ մոնոպոլիստական կապիտալին համապատասխանում է «այնպիսի միջազգային քաղաքականություն, որը հանգում է մեծ տերությունների պայքարին աշխարհի տնտեսական ու քաղաքական բաժանման համար»։ Պայքար վաճառահանման շուկաների, հումքի աղբյուրների, կապիտալի ներդրման շրջանների համար—այս է մոնոպոլիաների քաղաքականության էությունը։ Պատերազմը վերջանալուց հետո ամերիկյան մոնոպոլիստների

մեջ զգալիորեն ուժեղացավ նոր արտաքին շուկաներ զավթելու ձգտումը։ ԱՄՆ-ի ներքին շուկան ի վիճակի չէ կլանելու պատերազմի տարիներին խիստ աճած ամերիկյան արդյունաբերության պրոդուկցիան։ Արդեն այժմ ամերիկյան մամուլը ահազանգում է, որ գների խիստ բարձրացման հետևանքով բնակչության գնողունակության կրճատումը ստեղծում է մոտիկ ապագայում ապրանքների հսկայական գերարտադրության սպառնալիք։ Այդ հանգամանքը ամերիկյան կապիտալիստներին դրդում է զավթել նոր արտաքին շուկաներ։

Ամերիկյան կապիտալը ներկայումս ձգտում է թափանցել երկրագնդի բոլոր անկյունները։ Հարավային Ամերիկայում, Մերձավոր Արևելքում, Չինաստանում՝ ամենուրեք ամերիկյան մոնոպոլիստները ձգտում են իշխող դիրք գրավել։ Վերջերս Ազգային խորհրդի համագումարում հանդես գալով արտաքին առևտրի հարցերի վերաբերյալ, ԱՄՆ-ի Առևտրական պալատի նախագահ Ջեկսոնը բացեիբաց կոչ էր անում դոլարի և ամերիկյան արդյունաբերական ապրանքների ներթափանցմանը արտասահմանյան երկրներ։ ԱՄՆ-ի մոնոպոլիստական շրջան-



ների ծրագրի նպատակն է՝ համաշխարհային տիրապետության նվաճումն ամերիկյան իմպերիալիզմի կողմից։ Այդպիսի պլաններ են ներկայումս միանգամայն բացահայտորեն ձևակերպում խոշոր կապիտալի ներկայացուցիչները։ 1945 թ. դեկտեմբերին հանդես գալով արդյունաբերողների Ազգային ասոցիացիայի համագումարում, խոշոր բանկիր Օլդրիչը հայտարարեց. «Միայն Միացյալ Նահանգներն են ներկայումս պատրաստ իրենց վրա վերցնելու աշխարհի ղեկավարումը»։

Ձգտելով համաշխարհային տիրապետություն նվաճել, մոնոպոլիստական շրջաններն աշխատում են ԱՄՆ-ի պաշտոնական քաղաքականությունն ուղղել դեպի անսահմանափակ իմպերիալիստական էքսպանսիան, դեպի դոլարի դիվանագիտությունը։ Քսաներորդ դարի սկզբին հռչակված դոլարի դիվանագիտության իմաստն էր՝ ԱՄՆ-ի միջամտությունը մյուս երկրների ներքին գործերին՝ հօգուտ այդ երկրներում հիմնված ամերիկյան արդյունաբերական ընկերությունների ու բանկերի։ Դոլարի դիվանագիտության տրամաբանական հետևությունն էին ավելի թույլ երկրների վզին այս

կամ այն ձևի քաղաքական կախման փաթաթելու փորձերը։

Այժմ, երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, ուժեղացել է տենդենցը ԱՄՆ-ի արտաքին քաղաքականությունը շրջելու դեպի «դոլարային դիվանագիտության ուղին»։ ԱՄՆ-ի Առևտրական պալատի նախագահ Ջեկսոնը վերջերս կոչ էր անում «միջազգային հարցերի լուծման ժամանակ օգտագործել ողջ տնտեսական հզորությունը»։ Չի կարելի ասել, թե այդ կոչերն ապարդյուն եղան։ Լավ հայտնի է, որ Միացյալ Նահանգները փոխառություններն օգտագործում են իբրև մի զենք՝ պատերազմի հետևանքով քայքայված տնտեսապես թույլ երկրների վրա ճնշում գործադրելու համար։ Նաև հայտնի է, որ ԱՄՆ-ի ներկայացուցիչները բավական բացահայտորեն պաշտպանում են կապիտալիստական ընկերությունների շահերը, որոնք շահագրգռված են եվրոպական մի շարք երկրների էկոնոմիկայով, նույնիսկ այն դեպքում, երբ այդ շահերը ակներևաբար հակասում են կայուն և արդար խաղաղության գործին։ Թե ինչպիսի տխուր հետևանքներ ունի «դոլարի դիվանագիտությունը», երևում է ներկայումս Չի-



նաստանում կատարվող իրադարձություններից։ Բացահայտելով Չինաստանի քաղաքացիական պատերազմում ԱՄՆ-ի միջամտության պատճառները, ներկայացուցիչների պալատի անդամ՝ դեմոկրատ Դելասեյը հայտարարեց, թե դրանք բխում են «ամերիկյան ամենից ավելի ռեակցիոն ձեռնարկատերերի շահերից, որոնք ձգտում են Ասիայի անսահմանափակ տնտեսական շահագործմանը»։ «Այս է դոլարի դիվանագիտության լոգիկան»—հայտարարեց Դելասեյը։

Համաշխարհային տիրապետություն նվաճելու ռեակցիոն դիրքավորմանը համապատասխանում է արտաքին քաղաքականության այն կուրսը, որը ժխտում է միջազգային համագործակցության անհրաժեշտությունը, և բռնությունն է ընդունում իբրև հետպատերազմյան պրոբլեմների լուծման մեթոդ։ «Հասկանալի է,— ասաց ընկեր Մոլոտովը Միավորված ազգերի կազմակերպության Գլխավոր ասամբլեայի հոկտեմբերի 29-ի նիստում,— որ միջազգային համագործակցության նորմալ սկզբունքներն ամենևին չեն մտնում

այնպիսի իմպերիալիստական շրջանների պլանների մեջ, որոնք վերջին հաշվով հավատում են միայն ճնշման ծայրահեղ մեթոդներին և բռնությանը»։

Դժվար չէ համոզվել, որ նման տենդենցներն են հատուկ ԱՄՆ-ի ժամանակակից արտաքին քաղաքականությանը։ Փարիզի խաղաղության կոնֆերանսում չափազանց որոշակիորեն դրսևորվեց ամերիկյան դելեգացիայի ձգտումը՝ ինչպես էլ լինի, իր տեսակետը փաթաթել մյուս երկրների վզին։ ԱՄՆ-ի մամուլն այն շրջանում բացահայտ հայտարարություններ էր անում, թե հետպատերազմյան խաղաղությունը պետք է լինի «ամերիկյան խաղաղություն», այսինքն՝ այնպիսի խաղաղություն, որը նկատի ունի բոլոր ժողովուրդների հնազանդությունը ԱՄՆ-ի կամքին։ Պարզ է, որ այդպիսի պլանները, որոնք անհամատեղելի են ժողովուրդների ազատության և անկախության հետ, ենթադրում են ուժի գործադրումն իբրև միջազգային հարցերի լուծման մեթոդ։ Իզուր չէ, որ դրանց հեղինակներն ու ոգեշնչողները միլիտարիզմի պաշտպաններ են։ Նրանք աղմկարարություն են անում ատոմային ռումբի շուրջը, փորձելով ազդել թույլ նյար-



դերի տեր քաղաքականագետների վրա։ Հայտնի է, որ ԱՄՆ-ի ազդեցիկ շրջանները պաշտպանում են ատոմային էներգիայի օգտագործման այնպիսի պլան, որի նպատակն է Միացյալ Նահանգների համար ապահովել ատոմային ռումբի մոնոպոլ տիրապետությունը։ Վերջապես, ԱՄՆ-ի իմպերիալիստական շրջաններն առաջ են քաշում ամբողջ աշխարհը շրջապատող բազաների սիստեմ ստեղծելու մի ծրագիր։ Վերջերս հրատարակվեց կղզիների նկատմամբ խնամակալության ամերիկյան պլանը, որը «Նյու-Յորք պոստ» թերթը բնութագրել է որպես «1500 կղզիների ուղղակի անեքսիայի» մի փորձ։

Ամերիկյան ռեակցիայի բանակում եղած համաշխարհային տիրապետության հավակնորդները ձգտում են խորտակել Միավորված ազգերի կազմակերպության հիմքերը, վերացնել մեծ տերությունների միաձայնության սկզբունքը, որի վրա կառուցված է այն։ Այսպես կոչվող «վետոյի» իրավունքը վերացնելու դիմագոգիկ լոզունգով նրանք ճգնում են խախտել միջազգային համագործակցության հիմքերը և ճանապարհ հարթել այն տերությունների բլոկներ ստեղծելու հա-

մար, որոնք ձգտում են իրենց կամքը փաթաթել մյուս ժողովուրդների վզին: Հայտնի է, որ ազդեցիկ ռեակցիոն շրջանները, ինչպես Անգլիայում, այնպես էլ Միացյալ Նահանգներում, վաղուց արդեն մշակում են անգլո-ամերիկյան բլոկ ստեղծելու պլաններ: Չի կարելի ասել, թե այդ պլանները չեն արտացոլվում կյանքում: Փարիզի խաղաղության կոնֆերենցիան և Միավորված ազգերի կազմակերպության Գլխավոր ասամբլեյի նիստերը Նյու-Յորքում՝ ցույց տվին, որ Անգլիայի ու ԱՄՆ-ի միջև գոյություն ունի համաձայնություն, որն ուղղված է մյուս երկրների շահերի դեմ: Խաղաղության կոնֆերենցիայի և Գլխավոր ասամբլեայի մի շարք որոշումներ ընդունվեցին անգլո-ամերիկյան բլոկի բացահայտ ճնշման տակ, մեխանիկական քվեարկության միջոցով: Անգլիայի ու ԱՄՆ-ի միջև կայացված համաձայնությունը, ի հարկե, չի վերացնում այդ երկու գլխավոր կապիտալիստական երկրների միջև գոյություն ունեցող սուր հակասությունները: Պատերազմի հետևանքով ամերիկյան կապիտալի դիրքերն ամրացան, մինչդեռ անգլիական կապիտալիզմը պատերազմից դուրս եկավ տնտեսա-



կան լուրջ դժվարություններով ծանրաբեռնված: Անգլիան ստիպված է մեկը մյուսի ետևից զիջել իր դիրքերը համաշխարհային շուկաներում: Նա ստիպված եղավ ԱՄՆ-ից փոխառություն խնդրել, որպես հատուցում հրաժարվելով շատ առավելություններից համաշխարհային առևտրի ասպարեզում: Անգլիական նավատորմը կորցրեց իր տիրապետող տեղը ծովերում, առաջնությունը զիջելով ամերիկյան նավատորմին: Ուժեղացել է ԱՄՆ-ի ազդեցությունն անգլիական դոմինիոններում: Հասկանալի է, որ անգլիական կապիտալիստները չեն կարող հեշտությամբ հաշտվել իրենց դիրքերի թուլացման հետ: Արդեն այժմ կան Չինաստանում, Մերձավոր Արևելքում, Հարավային Ամերիկայում անգլո-ամերիկյան տնտեսական պայքարի շատ փաստեր: Սակայն Անգլիայի իմպերիալիստական շրջանները ներկայումս պատրաստ են հաշտվելու անգլո-ամերիկյան բլոկի մեջ Անգլիայի համար կրտսեր պարտնյորի դերի հետ, հույս ունենալով ԱՄՆ-ի օգնությամբ պահպանել իրենց գաղութային դիրքերը հարաճուն ազգային ազատագրական շարժման դեմ մղվող պայքարում:

Հարկ չկա ասելու, որ ներկայիս անգլո-
ամերիկյան համաձայնությունը հակասում
է խաղաղության և անվտանգության շահե-
րին։ Պատահական չէ, որ այդ համաձայ-
նության կողմնակիցները Սովետական
Միության հետևողական խաղաղ քաղաքա-
կանության մեջ տեսնում են իրենց պլան-
ների կատարման գլխավոր արգելքը։ Այդ է
ՍՍՌՄ-ի վերաբերմամբ քաղաքականության
այսպես կոչված «ամուր» կուրս վարելու
հարցում ամերիկյան ռեակցիոներների դե-
մագոգիական պահանջների և ԱՄՆ-ի ռեակ-
ցիոն մամուլի կողմից մղվող հակասովետա-
կան ողջ զրպարտիչ կամպանիայի իմաստը։

Չի կարելի ասել, թե քաղաքականության
իմպերիալիստական գիծը պաշտպանում է
միայն ռեսպուբլիկական պարտիան, որի
մեջ, իհարկե, կան նրա ավելի մեծ թվով
կողմնակիցներ։ Ռուզվելտի մահից և պա-
տերազմն ավարտվելուց հետո դեմոկրա-
տական պարտիայի ներսում սկսեցին ղե-
կավար դեր խաղալ պահպանողական տար-
րերը, որոնք վաղուց արդեն բլոկ են կազ-
մում ռեսպուբլիկականների հետ ինչպես
ներքին, այնպես էլ արտաքին քաղաքակա-



նության հարցում։ Պահպանողական դեմոկ-
րատները, որոնք ներկայացնում են հարա-
վային նահանգների խոշոր հողատերերի
շահերը, ժամանակին կատաղի պայքար
էին մղում Ռուզվելտի քաղաքական գծի դեմ,
իսկ Ռուզվելտի մահից հետո անում էին ա-
մեն ինչ, նրա առաջադիմական քաղաքա-
կանությանը վերջ դնելու համար։ Այդ բա-
նը դեմոկրատական պարտիային զրկեց
մասսայական աջակցությունից, որից նա
օգտվում էր Ռուզվելտի օրով։ Դրա ար-
դյունքներն արտահայտվեցին նոյեմբերին
տեղի ունեցած կոնգրեսի ընտրությունների
վրա։ Ռեսպուբլիկականների կողմից մեծա-
մասնության նվաճումը ինչպես սենատում,
այնպես էլ ներկայացուցիչների պալատում
պետք է դիտել ոչ այնքան իբրև ռեսպուբլի-
կական պարտիայի հաջողություն, որքան
իբրև դեմոկրատական պարտիայի պարտու-
թյուն։ Ձայն տալով ռեսպուբլիկականների
օգտին, ընտրողներն իրենց դժգոհությունն
արտահայտեցին դեմոկրատական պարտիա-
յի քաղաքականության նկատմամբ։

Կասկած չկա, որ ռեսպուբլիկական պար-
տիայի ռեակցիոն տարրերը կփորձեն ընտ-

թական հաջողությունն օգտագործել իրենց արտաքին-քաղաքական պլանների իրականացման համար։ Սակայն, եթե բուրժուական երկու առաջատար պարտիաների ղեկավար շրջաններն ավելի ու ավելի են մոտենում իմպերիալիզմի ընդհանուր պլատֆորմի վրա, ապա միևնույն ժամանակ նրանցից յուրաքանչյուրի, մանավանդ դեմոկրատական պարտիայի ներսում կան ազդեցիկ տարրեր, որոնք հանդես են գալիս ԱՄՆ-ի քաղաքականությունը միջազգային համագործակցության ուղին վերադարձնելու օգտին։

Դեմոկրատական պարտիայի մի շարք անվանի քաղաքական ու հասարակական գործիչներ՝ նախկին առևտրի մինիստր Ուոլլեսը, սենատոր Պեպպերը և ուրիշներ հրապարակորեն հանդես եկան լրջորեն քննադատելով այն գիծը, որ արտաքին քաղաքականության հարցերում գրավում է իրենց պարտիայի ղեկավարությունը։ Իրենց ելույթների մեջ նրանք կոչ են անում ամրապնդել սովետա-ամերիկյան համագործակցությունը։ Սեպտեմբերի 13-ի իր հայտնի ճառից հետո, որի մեջ դատապարտվում էր ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության ներկայիս ուղղությունը, Ուոլլեսը ստիպված



եղավ դուրս գալ կառավարության կազմից։ Բայց դա չթուլացրեց նրա ազդեցությունը։ Խաղաղության օգտին հանդես եկող պրոգրեսիվ գործիչների ուժը ոչ թե պաշտոնական դիրքի, այլ այն աջակցության մեջ է, որ նրանք վայելում են երկրի դեմոկրատական հասարակայնության լայն շրջաններում։

Ամերիկյան ժողովուրդը, ինչպես և մյուս բոլոր խաղաղասեր ազգերը, ցանկանում է, որպեսզի խաղաղությունը լինի հնարավորին չափ ավելի ամուր։ Ամերիկացիների ճնշող մեծամասնության այս զգացմունքներն արտահայտվեցին պրոգրեսիվ կազմակերպությունների կոնֆերանսում, որտեղ երկրի անվանի քաղաքական ու հասարակական գործիչները հանդես եկան, կոչ անելով պայքարել միջազգային համագործակցության ամրապնդման համար։

Միլիոնավոր հասարակ մարդիկ Ամերիկայում ձգտում են խաղաղության և մյուս ժողովուրդների հետ բարեկամական համագործակցության։

Ա. ԳԵՈՐԳԻԵՎ